քարէն գինը, 6—7 ֆրանք՝ գինիին գինը: Մինեւնոյն ատեն հետապնդումներ կը կատարուին այն խանութպաններուն դէմ որոնք չարաշահութիւն կը փորձեն :

ՆԱԽԿԻՆ ԱՔՍՈՐԱԿԱՆ ՄԸ փորձեց ինքզինքը կախել վարչապետարանին առջեւ: Ոստիկանները օգնութեան հասնելով փրկեցին: Թերթերը կը գրեն թէ յուսահատած էր, գործէն արձակուած ըլլալով :

ԼՈՒՍԻՆԵԱՆ անուն բախտախնդիր մը, որ ինքզինքը Կիպրոսի եւ Երուսաղէմի թագաւորնեբու ժառանգը կը կարծէ, վեց ամիս բանտարկութեան դատապարտուեցաւ, ամբաստանուած ըլլալով թէ աղջիկներ մոլորեցնելով կը շահագործէր :

ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐ Պ. Ռոպէռ Շուման վերադարձաւ Մ. Նահանգներէն, լաւատես տրամադրութիւններով, բայց մնալով միշտ վերապահ՝ Գերմանիոյ վերազինման հարցի մասին: «Շատ փափուկ խնդիր է այդ» ըսաւ: Դահլիճը սկսաւ քննել կատարուած աշխատանքները :

1951ի ԵԼՄՏԱՑՈՅՑԻՆ մէջ 4—500 միլիառ ֆրանքի բաց մը կը նախատեսուի: Մասնագէտներ դիտել կու տան թէ բուն բացը 600—700 միլիառի պիտի հասնի, եթէ Ամերիկան չօգնէ վերազինման ծախքերուն: Այժմէն իսկ ծանր տուրքեր կը ծանուցուին :

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ արտաքին նախարարը Պ. Էչէսըն յայտարարեց թէ իր կարծիքով, Համայնավար Չինաստան պիտի չմիջամտէ Քորէայի մէջ: Որեւէ ժողովուրդ, որ ՄԱԿի կողմէ ճանչցուիլ կ՚ուզէ, պէտք չէ այդ կազմակերպութեան սկզբունքներուն դէմ դիրք բռնէ :

ՀՆԴԿԱՉԻՆԻ ֆրանսական զօրքը պարպեց երեք դիրքեր, որպէսզի կարենայ համախմբուիլ եւ պաշտպանել Թոնքինի շրջանը, որ առատ բրինձ կ՚արտադրէ :

ՓԱՐԻԶԻ ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նոյեմբեր 12ին ժամը 16—24 Hôtel George Vի շքեղ սրահներուն մէջ:

Մանրամասնութիւնները յառաջիկային: Ստիպողաբար կը խնդրուի չխաչաձեւել :

ՎԻՃԱԲԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Հ. Յ. Դ. « Քրիստափոր » ենթակոմիտէի:

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին «Ահարոնեան» ակումբին մէջ :

Նիւթ՝ ՀԱՅԿԱԿԱՆ ԴԱՏԸ եւ իր ՀԻՄՔԵՐԸ

## Մարսէյլի Մշակութային Միութիւնը

Իր տարեշրջանը կը բանայ, աննախընթաց դասախօսութեամբ մը, նախագահութեամբ՝ Mr. J. BALLARDի, տնօրէն՝ «Cahiers du Sud»ի:

Ֆրանսերէն կը խօսի բանաստեղծ LUC ANDRÉ MARCEL : Նիւթը՝ ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆԸ

Այս շաբաթ, 7 Հոկտեմբեր, իրիկուան ժամը ճիշդ 9ին, Palet d'Orի սրահին մէջ (La Canebière) :

## Պարահանդէս-թէյասեղան

Նախաձեռնութեամբ Լիոնի Ֆ. Կ. Խաչի Սանուհիներու :

Այս կիրակի ժամը 3—8, Salle Hélvetiqueի մէջ (107 rue Dugesclin) :

Նախագահութեամբ Տիկ. ՕՏԷԹ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ



ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Եգիպտացի կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի կոմիտէները, ընկերները ինչպէս եւ համակիրները, այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, **Sociétés Savantes**ի մէջ:

Կը խօսի ընկեր Բժ. ԵՐ. ԽԱԹԱՆԱՍԵԱՆ:

## Հացկերոյթ-խնջոյք

Ի ՊԱՏԻՒ ՀԻՒՐԵՐՈՒ

Հ. Յ. Դ. Եգիպտացի կոմիտէն կազմակերպած է հացկերոյթ խնջոյք մը, այս կիրակի ժամը 19.30ին Café Le Cadetի վերնայարկը (17 rue Cadet, 63 rue Lafayette)

Ի ՊԱՏԻՒ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԷՆ ԵԿԱԾ ՀԻՒՐԵՐՈՒ

Կը հրաւիրուին Փարիզի եւ շրջաններու փափաքող ընկերներն ու համակիրները: Ծախքերու մասնակցութեան համար արձանագրուիլ մինչեւ ուրբաթ երեկոյ, Բալուեան, Հր. Սամուէլ եւ Պարսամեան դրատուները եւ «Յառաջ»ի խմբագրատունը :

ԱՅՆՃԱՐԻ ԴՊՐՈՑԻՆ ՀԱՄԱՐ

Լիոնէն Տէր եւ Տիկին Ն. Կեմալմազեան իրենց եղբօր յիշատակին Այնճարի «Յառաջ» վարժարանին կը նուիրեն 500 ֆրանք:

Նոյնպէս Պէլֆորէն ընկեր մը իր Լիոն այցելութեան առթիւ հազար ֆրանք կը նուիրէ Այնճարի դպրոցներուն, «Յառաջ»ի միջոցաւ :

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Գարակէօզեան Նախկին Սանուց Միութիւնը կը ծանուցանէ թէ Որբանոցին հիմնադիր-բարերար ՄԻՀՐԱՆ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆԻ յիշատակին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին, 15 rue Jean Goujon: Կը հրաւիրուին բարերարին յիշատակը յարգողները :

ՓԱՐԻԶԻ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻԷՆ

Այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցւոյ մէջ պիտի պատարագէ եւ քարոզէ Ատրպատականի Հայոց Առաջն. փոխանորդ Արժ. Տէր Կարապետ Ա. քհնյ. ՄԱՆՈՒԿԵԱՆ: Կը հրաւիրուի բարեպաշտ ժողովուրդը ::

Գ. ՅԱԿՈԲԵԱՆԻ ԵՒ Հ. ՃԻԶՄԷՃԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Հ. Մ. Ը. Մ.ի Ֆրանսայի Շրջ. վարչութիւնը, սկաուտական եւ մարզական վերին մարմինները կը հրաւիրեն բարեկամներ եւ համակիրներ, այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին, ուր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Հ.Մ.Ը.Մ.ի հիմնադիրներ՝ ԳՐԻԳՈՐ ՅԱԿՈԲԵԱՆԻ մահուան տարելիցին եւ ՀԱՅԿ ՃԻԶՄԷՃԵԱՆԻ մահուան քառասունքին առթիւ :

Հոգեհանգիստէն վերջ, այցելութիւն Thiaisի Փարիզեան գերեզմանատունը՝ Գրիգոր Յակոբեանի շիրմին :

ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ դպրոցը կը վերաբացուի այս երեքշաբթի ժամը 7ին: Դասաւանդութեան օրերը երեքշաբթի եւ հինգշաբթի երեկոները:

ԹՐԱԳՕՇ ՔԱՇԱՆԻ ՄԷՋ
ՍՕՍ ԵՒ ՎԱՐԴԻԹԵՐ

Այս կիրակի ժամը 2.30ին, Սալ Վոտուայի մէջ, 69 rue d'Arcueil: Սիրայօժար մասնակցութեամբ փարիզահայ լաւագոյն դերասաններու, Տիկ. Տիկ. Սիրուհի Նշանեան եւ Քնարիկ :

Պ. Պ. Տ. Նշանեան, Գմբէթեան, Պշտիկեան, եւ երգող ու պարող աղջիկներու խումբը:



ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ դարմանատան ատամնաբուժական բաժնի սպասարկութիւնը վերսկսած է ղեկավարութեամբ վիրաբոյժ – ատամնաբոյժ՝ Տիկին Մառի Պիւյիւքեանի, վկայուած Փարիզի ատամնաբուժական վարժարանէն :

Հիւանդները կ՚ընդունուին ամէն ուրբաթ ժամը 9.30 — 12:


**Imprimerie DER AGOPIAN**, 17 rue Damesme – (13)
**Le Gérant : A. NERCESSIAN**


ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԱՐՍԷԼ – ԱՌՆՈՒՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս կիրակի ժամը 15ին, սովորական հաւաքատեղին (Սարսէլ): Խիստ կարեւոր օրակարգ: Կը խնդրուի բոլոր ընկերներէն ճշդապահ ըլլալ :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Ակնունի ենթակոմիտէի ժողովը՝ այս շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Բացակաները նկատի կ՚առնուին:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբին ժողովը՝ այս երկուշաբթի իրիկուն ժամը 9ին, դպրոցին սրահը, 78 rue Rabelais: Կարեւոր օրակարգ :

ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԱՍՈՒԼԻՍ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած ՍԱՀԱԿ Բ. ԽԱՊԱՅԵԱՆ կաթողիկոսի ծննդեան հարիւրամեայ տօնակատարութեան յանձնախումբի կողմէ: Այս կիրակի իրիկուն ժամը 9ին, Քաֆէ Նուայի մէջ :

Մուտքը ազատ է :

## Հ. Մ. Մ.Ի ՄՐՑՈՒՄՆԵՐԸ

Հ. Մ. Մ.ի ֆութպոլի բոլոր խումբերը պիտի մրցին, Choisyի P. L. 5eի խումբերուն դէմ, այս կիրակի ժամը 1.30էն սկսեալ, Stade de la Tour à Parachuteի դաշտին վրայ: Métro Porte de Choisy :

Անշուշտ Իթալիի եւ Ժանթիյյիի մարզասէրները բազմութեամբ ներկայ պիտի ըլլան, քաջալերելու մեր մարզիկները :

## Կ՚ՈՒԶՈՒԻՆ

Կ՚ՈՒԶՈՒԻՆ արհեստանոցի մէջ աշխատելու համար կարող կարուհի mécanicienne մը եւ մէկ ֆինիսէօզ արդուկող :

Կ՚ուզուին նաեւ իրենց տան մէջ աշխատող լաւ կարուհիներ: Տեւական գործ :

Դիմել MINASSIAN, 32 rue des Annelets, Paris (19), մէթրօ Botzaris կամ Jourdain:

ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԵՐ

Ա. Աժտէրեան կը դասաւանդէ հայերէն լեզուն, մասնաւորներու եւ խումբերու, ամէն օր, ինչպէս նաեւ իրիկունները:

Հասցէ.— A. Ajdérian, 41 Ave. des Gobelains, Paris (13) :

Ամերիկեան պատուիրակը յայտնեց, թէ իր կառավարութիւնը բնաւ չուզեր հարաւային Քորէայի վարչապետը պարտադրել Քորէայի ժողովուրդին : Իսկ Ֆրանսայի ներկայացուցիչն ալ, անհրաժեշտ գտնելով ՄԱԿի ուժերուն ներկայութիւնը ամբողջ Քորէայի մէջ, ժամանակի մը համար, ըսաւ թէ Ֆրանսա առանց վերապահութեան կ'ընդունի ութերու ծրագիրը : Այս ծրագրի քըննութիւնը յետաձգուեցաւ յաջորդ նիստին :

✕ Հնդիկ վարչապետը Պ. Փանտիթ Նէրու ազդարարած է բրիտանական կառավարութեան, թէ համայնավար Չինաստան կրնայ Քորէայի պատերազմին մասնակցիլ, եթէ ՄԱԿի ուժերը հիւս. Քորէա մտնեն : Հնդիկ կառավարութիւնը իմացած է թէ չին համայնավար ուժերու մեծ համախըմբումներ տեղի կ'ունենան Մանչուրիոյ եւ Քորէայի սահմաններուն վրայ :

✕ Հարաւային Քորէացիներու յառաջխաղացումը կը շարունակուի : Այժմ կը գտնուին Վոնզան քաղաքէն 50 քիլմ. հեռուն : Կը կարծուի թէ կարմիրները այս քաղաքին շուրջը կ'ամրացնեն իրենց պաշտպանողական գիծը, ուր բուռն ընդդիմութեան մը կը պատրաստուին : Ամերիկեան օդանաւային ուժերը անխնայ կը ռմբակոծեն Հիւս. Քորէայի այն կէտերը, ուր կարմիրները իրենց պատրաստութիւնները կը տեսնեն եւ կը ջանան դժուարացնել անոնց դիմադրութիւնը : Ամէն պարագայի մէջ, անոնք բոլորովին կ'անգիտանան զոր. Մէք Արթըրի վերջնագիրը եւ անձնատուր ըլլալու ոչ մէկ տրամադրութիւն ունին :

✕ Կարմիրները մինչեւ հիմա ունեցած են 200.000 կորուստ, որուն 40 հազարը ռազմագերիներ են :

✕ Զօր. Մէք Արթըր յայտարարեց, թէ Քորէայի պատերազմին շնորհիւ անկում մը ունեցաւ աշխարհին տիրապետելու համայնավար փորձը :

Զօրավարը Ազգաժողովին բացորոշ հրահանգներուն կը սպասէ, դէպի հիւսիս յառաջանալու համար :

**ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ**

---

ԱԶԳ. ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ կազմակերպութեան աշխատանքները յառաջ կը տարուին արագօրէն : Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, պաշտպանողական ուժը պիտի բաղկանայ 400.000 քաղաքացիներէ, որոնք պիտի սպառազինուին հետեւակազօրքի յատուկ զէնքերով : Իւրաքանչիւր գիւղական շրջան պիտի ունենայ 5էն հարիւր պահակներ : Շատ աւելի ստուարաթիւ զօրախումբեր պիտի գտնուին ճարտարարուեստական եւ ռազմագիտական կեդրոններու մէջ : Պաշտպանողական ընդհ. քննիչ նշանակուեցաւ Փարիզի զինուորական կառավարիչը, զօր. Շուէն :

ՄԱՐՈՔԻ ՍՈՒԼԹԱՆԸ, Սիտի Մուհամմէտ Պէն Եուսէֆ, Պոլտօ կը հասնի այսօր, կիրակի, ֆրանսական յածանաւով մը, ընկերակցութեամբ իր միակ կնոջ եւ չորս զաւակներուն : Սուլթանը, որ 41 տարեկան է եւ կ'իշխէ 23 տարիէ ի վեր, Հանրապետութեան Նախագահին հիւր պիտի ըլլայ առաջին չորս օրերը, յետոյ պիտի քաշուի մասնաւոր կալուած մը, Փարիզի շրջակաները :

ԻՍՐԱՅԷԼ որոշեց անողորմաբար պայքարիլ սեւ շուկային դէմ : Վարչապետը այս առթիւ խորհրդակցեցաւ Մ. Նահանգներու նախկին ելեւմտական նախարարին՝ Պ. Մորկընթոյի հետ, որ Երուսաղէմ գացած է, մէկ միլիառ տոլարի փոխի մը խնդիրը քննելու համար :

ԱՆԳԼ. ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ որոշեց արգիլել մեքենայ-գործիքներու արտածումը դէպի արեւելեան Եւրոպա, Խ. Միութեան ենթակայ երկիրները, առանց սակայն խզելու տնտեսական յարաբերութիւնները :

ԳԵՐՄԱՆԻՈՅ ներքին ապահովութեան խնդիրները քննելու համար, Դաշնակիցները երեք զօրավարներ նշանակեցին : Գերմանիոյ ներկայացուցիչն է զօր. Շվերին :

ՀՆԴԿԱՉԻՆԻ ապստամբ ուժերը յարձակում գործեցին 60 քիլոմեթր ճակատի մը վրայ : Կատաղի կռիւներ կը մղուին Քոչինչինի մէ :

ԱՒՍՏՐԻՈՅ մէջ բարեկարգութիւնը վերահաստատուեցաւ երկու օրուան խռովութիւններէն վերջ : Կարմիրները կը սպառնան «Նոր հրահանգներ» տալ բանուորներուն :




**Imprimerie DER AGOPIAN**, 17 rue Damesme – (13)

**Le Gérant : A. NERCESSIAN**


## «ՅԱՌԱՋ»ի 25ամեակին առթիւ

Շնորհակալութեամբ ստացանք երեք հազար ֆրանք Պ. Հրանդ Փաստըրմաճեանէ :

## Հացկերոյթ - խնճոյք

### Ի ՊԱՏԻՒ ՀԻՒՐԵՐՈՒ

Հ. Յ. Դ. Եգիպտացի կոմիտէն կազմակերպած է հացկերոյթ խնճոյք մը, այս կիրակի ժամը 19.30ին Café Le Cadetի վերնայարկը (17 rue Cadet, 63 rue Lafayette)

### Ի ՊԱՏԻՒ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԷՆ ԵԿԱԾ ՀԻՒՐԵՐՈՒ

Կը հրաւիրուին Փարիզի եւ շրջաններու փափաքող ընկերներն ու համակիրները : Տոմսերու մասնակցութեան համար արձանագրուիլ մինչեւ ուրբաթ երեկոյ, Բալուեան, Հր. Սամուէլ եւ Պարսամեան գրատուները եւ «Յառաջ»ի խմբագրատունը :

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Գարակէօզեան Նախկին Սանուց Միութիւնը կը ծանուցանէ թէ Որբանոցին հիմնադիր - բարերար ՄԻՀՐԱՆ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆի յիշատակին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին, 15 rue Jean Goujon : Կը հրաւիրուին բարերարին յիշատակը յարգողները :

### Գ. ՅԱԿՈԲԵԱՆԻ ԵՒ Հ. ՃԻԶՄԷՃԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Հ. Մ. Ը. Մ.ի Ֆրանսայի Շրջ. վարչութիւնը, սկաուտական եւ մարզական վերին մարմինները կը հրաւիրեն բարեկամներ եւ համակիրներ, այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին, ուր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Հ.Մ.Ը.Մ.ի հիմնադիրներ՝ ԳՐԻԳՈՐ ՅԱԿՈԲԵԱՆի մահուան տարելիցին եւ ՀԱՅԿ ՃԻԶՄԷՃԵԱՆի մահուան քառասունքին առթիւ :

Հոգեհանգիստէն վերջ, այցելութիւն Thiaisի Փարիզեան գերեզմանատունը՝ Գրիգոր Յակոբեանի շիրմին :

ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ դպրոցը կը վերաբացուի այս երեքշաբթի ժամը 7ին : Դասաւանդութեան օրերը երեքշաբթի եւ հինգշաբթի երեկոները :

### ԹՐԱԳՕՇ ՔԱՇԱՆԻ ՄԷՋ ՍՕՍ ԵՒ ՎԱՐԴԻԹԵՐ

Այս կիրակի ժամը 2.30ին, Սալ Վոտուայի մէջ, 69 rue d'Arcueil : Սիրայօժար մասնակցութեամբ փարիզահայ լաւագոյն դերասաններու, Տիկ. Տիկ. Սիրուհի Նշանեան եւ Քնարիկ :

Պ. Պ. Տ. Նշանեան, Գմբէթեան, Պշտիկեան, եւ երգող ու պարող աղջիկներու խումբը :



### ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷԼ – ԱՌՆՈՒՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս կիրակի ժամը 15ին, սովորական հաւաքատեղին (Սարսէլ) : Խիստ կարեւոր օրակարգ : Կը խնդրուի բոլոր ընկերներէն ճշդապահ ըլլալ :

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբին ժողովը՝ այս երկուշաբթի իրիկուն ժամը 9ին, դպրոցին սրահը, 78 rue Rabelais : Կարեւոր օրակարգ :

### ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԱՍՈՒԼԻՍ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած ՍԱՀԱԿ Բ. ԽԱՊԱՅԵԱՆ կաթողիկոսի ծննդեան հարիւրամեայ տօնակատարութեան յանձնախումբի կողմէ : Այս կիրակի իրիկուն ժամը 9ին, Քաֆէ Նուայի մէջ :

Մուտքը ազատ է :

## Հ. Մ. Մ.Ի ՄՐՑՈՒՄՆԵՐԸ

Հ. Մ. Մ.ի ֆութպոլի բոլոր խումբերը պիտի մրցին, Choisyի P. L. 5eի խումբերուն դէմ, այս կիրակի ժամը 1.30էն սկսեալ, Stade de la Tour à Parachuteի դաշտին վրայ : Métro Porte de Choisy :

Անշուշտ Իթալիի եւ Ժանթիյյիի մարզասէրները բազմութեամբ ներկայ պիտի ըլլան, քաջալերելու մեր մարզիկները :

## Պարահանդէս թէյասեղան

Նախաձեռնութեամբ Լիոնի Ֆ. Կ. Խաչի Սանուհիներու :

Այս կիրակի ժամը 3—8, Salle Hélvetiqueի մէջ (107 rue Dugesclin) :

Նախագահութեամբ Տիկ. ՕՏԷԹ ՄԻՔԱՅԷԼԵԱՆի

### ՓԱՐԻԶԻ ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Նոյեմբեր 12ին ժամը 16—24 Hôtel George Vի շքեղ սրահներուն մէջ :

Մանրամասնութիւնները յառաջիկային :Ստիպողաբար կը խնդրուի չխաչաձեւել :

ջարկելով գլուխ գլխի տալ եւ լուծել վիճելի խնդիրները ։

Սթալինի փոխարէն, «Փրավտա»ն է որ կը պատասխանէ այս հրաւէրին ։ Յօդուածագիրը, Վիքթորով, կ՚ըսէ թէ Խ. Միութեան ներքին քաղաքականութիւնը փոխելու փորձը ոչ միայն լրբութիւն է, այլեւ ծիծաղելի ու անհեթեթ ։«Սթէյլըն գուրկ է տարրական բարեմտութենէ եւ հրէշային կերպով կը չարափոխէ իրերը, երբ կը յայտարարէ թէ միջազգային յարաբերութեանց այժմու կացութեան պատասխանատուն Խ. Միութիւնն է» ։

Մոսկուայի օտար շրջանակները կ՚ըսեն, թէ «Փրավտա»յի այս յօդուածը պատասխան մըն է ոչ միայն Սթէյլընին, այլեւ Թրումընի Սան Ֆրանչիսքոյի մէջ խօսած վերջին ճառին,, որու մասին խորհրդային մամուլը դեռ տող մը անգամ չէ գրած ։ Այս առթիւ ալ կը հաստատուի թէ Խ. Միութիւնը, ոչ մէկ նպատակ ունի փոխելու իր քաղաքականութիւնը ։

╳ Մ. Նահանգները ընդունեցին Սուրիոյ եւ Իրաքի առաջարկը «հինգերու ժողով» մը հրաւիրելու մասին ։

╳ Արեւմտեան Գերմանիոյ վարչապետը Պ. Ատընաուր յայտարարեց, թէ Գերմանիա պատրաստ է իր ուժերը տրամադրելու Արեւմտեան Եւրոպայի պաշտպանութեան գործին, եւ թէ խորհրդային յարձակում մը պէտք է կեցնել ոչ թէ Հռենոսի վրայ, այլ Երկաթեայ Վարագոյրին առջեւ ։

---

ՔՈՐԷԱՅԻ մէջ Ամերիկացիները 4000 զինուորներ թափեցին անկարգելներով, Փեոնկեանկէն 50 քիլմ. դէպի հիւսիս բոլոր այն ճամբաներուն վրայ, ուրկէ կը նահանջէին 27.000ի հասնող կարմիր ուժերը ։ Զօր. Մէք Արթըր, որ անձամբ կը վարէր այս գործողութիւնը, գրեթէ վերջացած կը նկատէ պատերազմը ։

ԴԱՄԱՍԿՈՍԷՆ կը հեռագրեն թէ ոստիկանութիւնը ցրուեց խումբ մը «խաղաղութեան կուսակիցներ» որոնք որոշեր էին ժողով գումարել ուրբաթ օր, առանց արտօնութեան ։ Կարգ մը ձերբակալութիւններ կատարուեցան ։

ՊՈՒՔՐԷՇԻ մէջ բացուած նոր դատին առթիւ, ամբաստանեալները «խոստովանեցան» թէ գաղտնի տեղեկութիւններ հաղորդած էին ֆրանսական դեսպանատան զինուորական կցորդին (գնդապետ Փարիզօ) ։ Կաթոլիկ քահանայ մը, Մութէ Տիմէթրու, ըսաւ թէ օգնած էր զինեալ խռովարար խումբ մը կազմելու 1947ին եւ թէ գնդապետը առաջարկած էր իրեն լրտեսական ցանց մը կազմել ։ Ուրիշ ամբաստանեալ մը պատմեց թէ գնդապետը եւ իր քարտուղարը պատուիրած էին օգտագործել Պուքրէշի պապական նուիրակութիւնը, լրտեսական լուրեր հաղորդելու համար ։ Ամբաստանեալներէն երեքը Ֆրանսացի են (մէկը կին) ։ Ամբաստանագրին համաձայն, երեքն ալ խոստովաներ են թէ լրտեսութիւն կը կատարէին ...

ԹՈՒԼՈՆԻ զինուորական ատեանը հնգական տարի բերդարգելութեան եւ ստորնանգրկութեան դատապարտեց երկու ենթասպաներ, որոնք ամբաստանուած էին թէ փորձեր են խախտել նաւազներուն բարոյական կորովը, վնասել զինամթերքին եւն. ։

ԼԻԲԻԱՆ (նախկին ափրիկեան Տրիպոլիս), որ եղ առնուած էր Իտալացիներուն ձեռքէն, աժամեայ կառավարութիւն մը պիտի ունենայ 1951 Ապրիլ 1ին, իբրեւ նախաքայլ անկախութեան ։ Ազգաժողովին քաղաքական յանձնախումբը այս որոշումը քուէարկեց 53 ձայնով, մէկի դէմ (Ֆրանսա) ։

ՊՈՒԼԿԱՐԻՈՅ Մակեդոնացիները տեղահանուելով կը փոխադրուին այն գիւղերուն մէջ որոնց Թուրք բնակիչները արտաքսուած են, ինչպէս հաղորդեց Պելկրատի հեռագրական գործակալութիւնը ։

ՀՆԴԿԱՉԻՆԻ ֆրանսական հրամանատարութեան կարգադրութեամբ, երկու քաղաքներ եւս պարպուեցան, Լանկսոն եւ Մոնքէյ ։ Զինուորները փոխադրուեցան նոր դիրքերու վրայ, ապահովելու համար Թոնքինի պաշտպանութիւնը ։



# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 60ԱՄԵԱԿԸ

## Լիոնի մէջ

ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ին, ԿԻՐԱԿԻ ԺԱՄԸ 15ԻՆ, Salle Rameau ։ Մանրամասնութիւնները յետոյ ։

★

## Վիէնի մէջ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ԿՈՄԻՏԷԻ, մասնակցութեամբ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ, Հ. Մ. Ը. Մ.Ի, ՀԱՅ. ԿԱՄ. ԵՒ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ, ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԵՒ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԱՅՐ. ՄԻՈՒԹԵԱՆ ։

29 Հոկտեմբեր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 21ին, Théatre Municipalի շքեղ սրահին մէջ ։

Պատուոյ նախագահութեամբ՝

ՔԱՂԱՔԱՊԵՏ ԸՆԿ. HUSSELի

Կը նախագահէ ընկեր Ս. ՍԻՄԼԵԱՆ

Կը խօսի ընկեր ՎԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

Խօսք կ՚առնեն Le Dauphiné Libéréի խմբագիրը քաղաքացի BERTET եւ ընկերվարական ներկայացուցիչները ։ Ներկայ կ՚ըլլան պետական բարձր պաշտօնատարներ ։

Գեղարուեստական բաժին.— Կենդանի պատկեր, Արաքս երգչախումբ, պար սանուհիներու կողմէ, մեներգ Տիկ. Թաղէոսեանէ, Տիկին Ռըստիկեանէն եւ Տիկին Կարապետեանէն ։ Կը նուագէ երիտասարդ ջութակահար Պիպէրեան ։

## Սէնթ Էթիէնի մէջ

ՆՈՅԵՄԲԵՐ 12ԻՆ

## Տէսինի մէջ

28 ՀՈԿՏ. ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ, Հ. Յ. Դ. ՏԱՆ ՄԷՋ

# «ՅԱՌԱՋ»ի 25ամեակին առթիւ

Լիոնի բարեկամներու ցանկը.— Տիկին Սարայտարեան հազար ֆրանք, Տիկ. Մարի Մովսէսեան 500 ֆրանք, Միսաք Միրզէ, Պէլֆորցի ընկեր մը, Մամբրէ Տէր Պետրոսեան, Ղազար Ղազարեան, Պետրոս Պէկիրճեան, Գրիգոր Աճէմեան հազարական ֆրանք ։ Զօրս Դաշնակցական ուսանողներու կողմէ (Թաշճեան, Տասնապետեան, Եագուպեան եւ Խրիմեան 1200 ֆր.), Սողոմոն Կիւլէզեան, Կարապետ Սահակեան, Սահակ Կէնճեան, Կարապետ Մանուկեան, Տօնապետ Տօնապետեան, Յովհաննէս Հարէլեան, Աւետիս Սիմոնեան, Կարապետ Յովակիմեան, Միհրան Աբրահամեան (Սէնթ Էթիէն), Մանուկ Մանուկեան (Սէնթ Էթիէն), Յովհաննէս Տէր Պետրոսեան, Պարգեւ Յակոբեան, Կարապետ Խրիմեան, Զէզեան, Երուանդ Համալեան (Սէնթ Էթիէն), Երուանդ Պոչուքլեան (Սէնթ Էթիէն), Կիրակոս Փափազեան 500ական ֆրանք, Գառնիկ Առաքէլեան, Սահակ Տէրմանեան, Ասատուր Մարկոսեան, Տիկին Պոչուքլեան 200ական ֆրանք ։ Ընդհ. գումար 18.000 ֆրանք ։ (Տես «Յառաջ» 20 Հոկտ.) ։

---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

---



ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ԱՌԱՋՆ. ՏԵՂԱՊԱՀԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Ատրպատականի առաջն. տեղապահ Կարապետ Ա. քհնյ. Մանուկեան պիտի պատարագէ եւ քարոզէ այս կիրակի Մարսէյլ, Փրատոյի մայր եկեղեցին ։



ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան մեծ պարահանդէսին որ տեղի կ՚ունենայ 2 Դեկտեմբեր, 51 rue Grignan Clubի շքեղ սրահներուն մէջ ։

Մանրամասնութիւնները առանձին յայտարարութեամբ ։

Հ. Յ. Դ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ

Հ. Յ. Դ. Եգիպտացի կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր խումբերու ընկերները, այս չորեքշաբթի իրիկուն ժամը 20.30ին, Le Cadet սրճարանին վերնայարկը ։

Կը դասախօսէ ընկեր ՀՐԱՆԴ ԲԱԼՈՒԵԱՆ

Նիւթը՝ «Միքայէլ Վարանդեանի կեանքն ու գործը» ։ Սիրով կը հրաւիրուին նաեւ շրջանի ընկերները ։

ՑՈՒՇԱՏԵՏՐ

---

ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ «Արամ» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր շրջանի ընկերները, այս չորեքշաբթի ժամը 21ին, ընկերվարականներու սրահը ։

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Ֆր. Կ. Խաչի մասնաճիւղի ժողովը այս երկուշաբթի, ժամը 3ին, Հայոց մատուռին սրահը ։ Բոլոր ընկերուհիներուն ներկայութիւնը անհրաժեշտ է ։



ԴԵՐԱՍԱՆ ԹՐԱԳՕՇ ՓԱՐԻԶ

Նոյեմբեր 5ին, կիրակի ժամը 3ին, Պուա Քոլոմպի քաղաքապետարանի սրահին մէջ ։

Հ. Մ. Ը. Մ.ի 30ամեակի առթիւ հանդէս, նախագահութեամբ Գ. Յովհաննէսեանի, նաեւ ներկայացում՝ ՍՕՍ եւ ՎԱՐԴԻԹԵՐ




**Imprimerie DER AGOPIAN**, 17 rue Damesme – (13)

**Le Gérant : A. NERCESSIAN**

րեւմտեան դաշնակիցները բաւական զօրաւոր դուրս գան մղելու իրենց առաջին ճակատամար – տը Էլպայի եւ երկրորդը Վիսթուլայի առջեւ (Լեհաստան), այն ատեն գերման ընկերվարական – ները պիտի խոստանան տալ իրենց աջակցու – թիւնը»:

Միջազգային ընկերվարական համագումարին առթիւ, որ գումարուեցաւ Փարիզի մէջ, Կոմի – տէին (Կոմիսքօ) բրիտանացի անդամը Պ. Մորկըն Ֆիլիփս յայտարարեց, թէ բրիտանական կառա – վարութիւնն ու խորհրդարանը ոչ մէկ որոշում տուած են դեռ Գերմանիոյ վերազինման մասին: «Բայց, եթէ մօտալուտ է ռուսական յարձակումը եւ եթէ գերման վերազինումը կրնայ արգիլել զայն, այդ պարագային պէտք է վերազինել Գեր–մանիան»:

Ֆրանսայի ներկայացուցիչը Պ. Կի Մոլէ յայտ – նեց թէ Ֆրանսայի ընկերվարական կուսակցու – թիւնը հակառակ է Գերմանիոյ վերազինման: « Կրնանք գերմանական մասնակցութիւնը ընդու – նիլ իբրեւ մէկ մասը եւրոպական բանակին, բայց ատկէ առաջ պէտք է իրականանայ Եւրոպայի մի–ութիւնը »:

X Վերջին տեղեկութեանց համաձայն, վար – չապետը այսօր Ազգ. Ժողովին պիտի ներկայացնէ միջին ծրագիր մը, Գերմանիան տնտեսական եւ զինուորական տեսակէտով միացնել միացեալ Եւ – րոպայի մը:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՆԴԿԱՉԻՆԻ ֆրանսական զօրքը եօթներորդ դիրք մըն ալ պարպելով, այժմ կ'ամրանայ Հա – նոյի մէջ, ուր կան 80.000 զինուորներ: Կ'ըսուի թէ 15.000 չինացի զինուորներ մտած են Հնդկաչին:

200.000 ՕՏԱՐԱԿԱՆՆԵՐՈՒ մասին ստուգում–ներ կատարել սկսան Անգլիոյ մէջ: Մասնաւոր քննիչներ նշանակուած են այս գործին համար :

ԵՈՒԿՈՍԼԱՒԻԱ 105 միլիոն տոլարի ուժեստ խնդրեց Մ. Նահանգներէն, որպէսզի երկիրը սովի չմատնուի: Անգլիայէն ալ օգնութիւն կը սպաս – ուի :

ՍՈՒՐԻԱ 150.000 տոլարի վարկ մը պիտի ըս–տանայ յետամնաց երկիրներու յատկացուած գու–մարներէն :

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ նախկին պատերազմական նախարարը, Պ. Սթիմսըն, որուն օրով գործած – ուեցան հիւլէական ռումբը Ճափոնի վրայ, մեռաւ շաբաթ օր: 83 տարեկան էր եւ իր յուշերուն մէջ շոնդալից յայտնութիւններ հրատարակեց հիւլէա–կան ռումբի գործածութեան պարագաներու մա – սին :

ՀԻՒԼԷԱԿԱՆ ռումբը մաշած է իբրեւ պատե – րազմի զէնք, յայտարարեց անգլիացի գիտնական մը, 500 կենսաբաններու եւ բնագէտներու համա–գումարին մէջ (Լոնտոն): Իր զեկուցման համա – ձայն, կենսաբանութիւնը այնքան յառաջ գացած է որ կարելի է մարդկային էակներ ոչնչացնել 50առ հարիւր համեմատութեամբ, նոր հիւանդութիւն–ներով: Ուրիշ գիտնական մը, Լորտ Պոյտ Օր, որ Նոպէլի խաղաղութեան մրցանակը շահած էր 1949ին յայտարարեց.— « Բովանդակ աշխարհ ահուսարսափի մատնուած է հիւլէական ռումբէն, բայց կենսաբանութիւնը շատ աւելի յառաջ գա – ցած է վերջին տարիներու ընթացքին քան բնագի–տութիւնը »: :

ՀԱՄԱՑՆԱՎԱՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ընդհ. քարտուղարին՝ Մոռիս Թորէզի հիւանդութիւնը երկար խնամքի կը կարօտի, համաձայն հրատա – րակուած տեղեկութեանց: Մոսկուայէն ալ բժիշկ մը եկած է: Հիւանդ է նաեւ ուրիշ կարեւոր դէմք մը, Քոուագա, նախկին նախարար :

ՋՕՐ. ՏԸ ԿՈԼ շաբաթ օր ճառ մը խօսելով կուսակցութեան համագումարին առթիւ, կրկնեց թէ պատրաստ է ստանձնելու իշխանութեան պա – տասխանատուութիւնը: Այս առթիւ բացատրեց թէ Ֆրանսա պէտք է ունենայ առ նուազն 40 զօրաբա–ժին, 5000 օդանաւ եւ արդիական նաւատորմիղ մը 350.000 թոն տարողութեամբ : ա

ԹՈՒՐՔԻՈՅ նոր մարդահամարը տեղի ունե – ցաւ կիրակի օր: Բոլոր բնակիչները իրենց տու – ներէն դուրս չելան առտուան ժամը 8էն 6: Նոյն օրը տասնըհինգ հոգի մեռան, ութ երախաներ ծնան Անգարայի մէջ, ինչպէս կը հաղորդէ հե – ռագիրը: Շոգենաւերու, օդանաւերու եւ կառա – խումբերու ճամբորդներն ալ դուրս չելան: Ոչ հանրակառքերը կը բանէին, ոչ ալ ինքնաշարժ–ները: Վերջին մարդահամարը կատարուած էր 1945ին եւ բնակչութեան թիւը կը հաշուէին 19 միլիոն :

### ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան մեծ պա–րահանդէսին որ տեղի կ'ունենայ 2 Դեկտեմբեր, 51 rue Grignan Clubի շքեղ սրահներուն մէջ :

Մանրամասնութիւնները առանձին յայտարա – րութեամբ :

Imprimerie DER AGOPIAN , 17 rue Damesme – (13)
Le Gérant : A. NERCESSIAN

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՅՕԱՄԵԱԿԸ

## Լիոնի մէջ

ՀՈԿՏԵՄԲԵՐ 29ին, ԿԻՐԱԿԻ ԺԱՄԸ 15ԻՆ, Salle Rameau: Մանրամասնութիւնները շուտով:

★

## Վիէնի մէջ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ԿՈՄԻՏԷԻ, մասնակցութեամբ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ, Հ. Մ. Ը. Մ.Ի, ՀԱՅ. ԿԱՄ. ԵՒ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒ – ԹԵԱՆ, ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԵՒ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԱՅՐ. ՄԻՈՒԹԵԱՆ:

29 Հոկտեմբեր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Théatre Municipalի շքեղ սրահին մէջ:

Պատուոյ նախագահութեամբ՝
ՔԱՂԱՔԱՊԵՏ ԸՆԿ. HUSSELի
Կը նախագահէ ընկեր Ս. ՍԻՍԼԵԱՆ
Կը խօսի ընկեր ՎԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

Խօսք կ'առնեն Le Dauphiné Libéréի խմբագիրը քաղաքացի BERTET եւ ընկերվարական ներկայա–ցուցիչները: Ներկայ կ'ըլլան պետական բարձր պաշտօնատարներ:

Գեղարուեստական բաժին.— Կենդանի պատ–կեր, Արաքս երգչախումբ, պար սանուհիներու կողմէ, մեներգ Տիկ. Թադէոսեանէ, Տիկին Ռըս – տիկեանէն եւ Տիկին Կարապետեանէն : Կը նուա–գէ երիտասարդ ջութակահար Պիպէրեան :

## Սէնթ Էթիէնի մէջ

ՆՈՅԵՄԲԵՐ 12ԻՆ

## Տէսինի մէջ

28 ՀՈԿՏ. ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ, Հ. Յ. Դ. ՏԱՆ ՄԷՋ

## «ՅԱՌԱՋ»ի 25ամեակին առթիւ

Շուազիէն ընտանիք մը 500 ֆրանք կը տրա – մադրէ, մաղթելով տօնել յիսնամեակը, անկախ Հայաստանի մէջ :

ԼԻՈՆ, 19 Հոկտ.— Տէր եւ Տիկին Խնկիկ կէնճեան ուրախութեամբ կը ծանուցանեն ծնուն – դը իրենց առջինեկ զաւկին՝ ՀԱՅԿԱՆՈՅՇի : Այս առթիւ հազար ֆրանք կը նուիրեն «Յառաջ»ի, շնորհաւորելով անոր 25ամեակը :



ԿՈՉ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՆԱԽԿԻՆ ՍԱՆԵՐՈՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Վենետիկի Մուրատ Ռափայէլ–եան, Փարիզի Մուրատեան եւ առ հասարակ Մխիթարեան դպրոցներու Մարսէյլի շրջանին նախկին սաները կը հրաւիրուին իրենց հասցէնե–րը յայտնել դեղագործ Պ. ԱՐԱՄ ՇԵԽԻԿԵԱՆի, Pharmacie Centrale, Place des Capucines, Marseille :

Իրենց ստացած դաստիարակութեան արժա – նավայել նախանձախնդրութեամբ՝ հրաւիրեալ–ները պէտք չէ որ անտարբեր մնան այս կոչին, ի մի հաւաքուելու եւ ազգօգուտ կազմակերպութիւն մը հիմնելու հեռանկարով :

Նախաձեռնող Մարմին





Հ. Յ. Դ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐ

Հ. Յ. Դ. Եգիպտացի կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր խումբերու ընկերները, այս չո–րեքշաբթի իրիկուն ժամը 20.30ին, Le Cadet սրճա–րանին վերնայարկը :

Կը դասախօսէ ընկեր ՀՐԱՆԴ ԲԱԼՈՒԵԱՆ

Նիւթը՝ «Միքայէլ Վարանդեանի կեանքն ու գործը»: Սիրով կը հրաւիրուին նաեւ շրջանի ըն–կերները :

### ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ «Արամ» ենթակոմի–տէն ժողովի կը հրաւիրէ իր շրջանի ընկերները, այս չորեքշաբթի ժամը 21ին, ընկերվարական – ներու սրահը :

